# ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ
# KOHARIK GAZAROSSIAN

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՐԳԵՀՈՆԻ ՀԱՄԱՐ
## WORKS FOR ORGAN

# ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ
## ԵՐԳԵՀՈՆԻ ՀԱՄԱՐ

Խմբագրութիւն՝
ՀԱՅԿ
ԱՒԱԳԵԱՆ

Գահիրէ 2005

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գամ խորին շնորհակալութիւններս յայտնելու Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան՝ որ ընդունեց հոգալ այս հատորի տպագրութեան ծախսերը:

Յատուկ շնորհակալութիւն տիկ. Սօնա Պետրոսեանին (Փարիզ)՝ որ տրամադրեց Գ. Ղազարոսեանի ձեռագիրները եւ թոյլատրեց անոնց տպագրութիւնը:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ըլլալով բարձրահմուտ դաշնակահարուհի՝ Գոհարիկ Ղազարոսեանի (Կ. Պոլիս, 21 Դեկտեմբեր 1907 – Փարիզ, 29 Հոկտեմբեր 1967) ստեղծագործական ժառանգութեան գլխաւոր մասը, բնականաբար, պիտի կազմէր դաշնակի գործերը, որոնք կը բովանդակեն բազմաթիւ նուագաշարեր, մանրանուագներ եւ երկու քոնչերթօ: Սակայն ոչ նուազ հետաքրքրութիւն կը ներկայացնեն նաեւ իր միւս գործերը՝ ջութակի եւ դաշնակի, թաւջութակի եւ դաշնակի, սրինգի եւ դաշնակի, եռանուագի (դաշնակ, ջութակ եւ թաւջութակ, եւ դաշնակ, սրինգ եւ ջութ), լարային քառանուագի, հնգանուագի (օպոա եւ լարային քառանուագ, եւ սրինգ եւ լարային քառանուագ), երգեհոնի համար, ինչպէս նաեւ բազմաթիւ մեներգներ եւ խմբերգներ՝ տարբեր նուագարաններու նուագակցութեամբ, եւ միակ թատերապարը (ballet)՝ *Մօր մը պատմութիւնը*:

Իբրեւ Ղազարոսեանի ստեղծագործութիւններու հրատարակութեան առաջին փուլ՝ կը ձեռնարկեմ գործիքային երաժշտութեան փոքր կտաւի լիակատար գործերուն քննական խմբագրութեան (critical edition), յոյս ունենալով այնտեղ բացայայտել խորիմաց, նրբազգաց, վսեմ իմացականութեամբ օժտուած երաժշտահանի մը ցարդ անյայտ մնացած յատկանիշները:

Հատորիս մէջ լոյս տեսած գործերուն ձեռագիրները կը պահուին տիկ. Սօնա Պետրոսեանի մօտ, Փարիզ, որ զանոնք ժառանգած է իր հօրաքրոջմէն՝ Գոհարիկ Ղազարոսեանէն:

## ԵՐԵՔ ՇԱՐԱԿԱՆ
## TROIS CANTIQUES

Անոնք են՝ *Կանոն Աստուածայայտնութեան ճրագալուցի*՝ Հարց «Որ դասուց երկնաւորաց», Ողորմեա «Անկանիմք առաջի քո» եւ *Կանոն Աստուածայայտնութեան Ա. աւուրն*՝ «Անըսկիզբն էակից»-ի («Ցնծութեամբ տօնեսցուք») Գործք Տեառնը: Տպագրուած են 1946-ին, *Հասկ* ամսաթերթին մէջ եւ նախատեսուած են նուագուելու ձախ ձեռքի դաշնակի կամ երգեհոնի համար[1]:

Մեղեդիները քաղուած են Եղիա Տնտեսեանի *Շարական ձայնագրեալ*էն[2]:

Ստեղծագործութիւնները սերտօրէն կապուած են աւանդական մեղեդիներուն հետ:

Վերոյիշեալ երեքին աւելցնելով հինգ շարական եւս, իբրեւ ութ շարժումով երգաշար՝ դաշնակի նուագակցութեամբ, լոյս կ'ընծայէ *Հասկ*ին մէջ, 1948-ին[3]: Արշակ Ալպօյաճեան իր գոհունակութիւնը կը յայտնէ այս հրատարակութեան նկատմամբ, գրելով՝ որ «ասիկա մեծ ծառայութիւն մըն է վասն զի միջազգայնացնելու կը ծառայէ շարականները, որոնք հայկական ձայնանիշերով դատապարտուած են անմատչելի մնալու նոյնիսկ երաժշտութեան գիտակ հայերու»[4]:

Ձեռագիրներուն մէջ կը գտնուին նաեւ 1948-ի տպագրութեան մէջ տեղ գտած շարականներուն անտիպ այլ տարբերակներ՝ մեներգի, սրինգի եւ դաշնակի, եւ մեներգի, ջութակի եւ դաշնակի համար: «Որ դասուց երկնաւորաց»-ը եւ «Անսկիզբն էակից»-ի Գործքը մշակուած են նաեւ երկձեռն դաշնակի համար[5], «Ուրախացիր սրբուհի»-ն եւ «Անսկիզբն էակից»-ը եռանուագի համար՝ դաշնակ (կամ երգեհոն), ջութակ եւ թաւջութակ[6]:

*Հասկ*ին մէջ տպագրուած երեք շարականներուն ձեռագիրները չեն յայտնաբերուած, որով հրատարակութեանս հիմքը յիշեալ տպագրութիւնն է:

Ընդհանուր խորագիրը՝ *Երեք շարական*-*Trois cantiques* աւելցուած է իմ կողմէս: Ենթախորագիրները ընդունած եմ *Հասկ*ի տպագրութենէն, որոնք, բնականաբար, գրուած են միայն հայերէն: Հատորիս ամբողջականութիւնը պահպանելու համար՝ ֆրանսերէն համարժէքները աւելցուցի իմ կողմէս, նոյնութեամբ հետեւելով ուրիշ տարբերակներու մէջ նշուած ֆրանսերէն խորագիրներուն:

## ՆԱԽԱԲԱՆ ԵՒ ՖԻՒԿ
## PRÉLUDE ET FUGUE

Prélude-ը (Նախաբան) հիմնուած է Կոմիտաս Վարդապետի *Երգեցողութիւնք սրբոյ պատարագի* «ի հանդիսաւոր աւուրս» զգեստաւորումի շարական «Խորհուրդ խորին»-ի մեղեդիին վրայ: Fugue-ին (Ֆիւկ) նիւթը (subject) քաղուած է Կոմիտաս Վարդապետի նոյն շարականի «ի հասարակ աւուրս»-էն, հականիւթը (countersubject) ինքնուրոյն յղացում մըն է՝ ներշնչուելով «ի հանդիսաւոր աւուրս»-էն, իրականացնելով բոլորովին ազատ մշակում մը: Ղազարոսեան այս Prélude et Fugue-ը նախ յօրինած է մենանուագ դաշնակի համար, իբրեւ 24 չարժումէ կազմուած անաւարտ *Album bien tempéré*-ի (Բարեխոխեալ ալպոմ) թիւ 6: 1957 թուակիր ձեռագիր մը ցոյց կու տայ՝ թէ զայն նախատեսած է նաեւ իբրեւ դաշնակի անկախ ստեղծագործութիւն մը[7]: Ան մաս կը կազմէ նաեւ ջութակի ու դաշնակի[8] եւ թաւջութակի ու դաշնակի[9] *Album bien tempéré*-ներուն, ինչպէս նաեւ ջութակի եւ դաշնակի[10] եւ սրինգի եւ դաշնակի[11] *Huit chorals et Prélude et Fugue*-երուն (Ութ շարական եւ Նախաբան եւ Ֆիւկ): Կը գտնուի Prélude-ի օպուայի եւ լարային քառանուագի[12] տարբերակը:

Առկայ են նաեւ «Խորհուրդ խորին»-ի հանդիսաւոր եւ հասարակ օրերու ձեռագիր մշակումներ՝ թենորի, քառաձայն երգչախումբի եւ երգեհոնի, թենորի, քառաձայն երգչախումբի եւ լարային նուագախումբի, քառաձայն երգչախումբի եւ նուագախումբի, քառաձայն երգչախումբի եւ լարային քառանուագի, մեներգի եւ լարային քառանուագի համար:

Երգեհոնի տարբերակին ձեռագիրը հետեւեալն է.

Խորագիր՝ Prélude et Fugue [Նախաբան եւ Ֆիւկ]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ երգեհոն: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 3: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր: Մեծութիւն՝ 27.2x35 սմ.:

## ՍԹԱՊԱԹ ՄԱԹԷՐ
## STABAT MATER

Երաժշտութիւնը նախորդ գործին՝ Prélude et Fugue-ի (Նախաբան եւ Ֆիւկ) Prélude-ին նման է, բացի վերջաւորութենէն, ուր առաջինի Prélude-ին մէջ երաժշտահանը ընտրած է աւելի մեղմ աւարտ մը՝ դիւրացնելու համար անցումը դէպի Fugue-ը:

Ձեռագիրը հետեւեալն է.

Խորագիր՝ Stabat Mater: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ երգեհոն: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր: Մեծութիւն՝ 27.3x36.3 սմ.:

Տիտղոսաթերթին վրայ իբրեւ ենթախորագիր գրուած է՝ “(réduction pour orgue) pour Ténor solo (voix traitée comme instrument), Chœur et orchestre à cordes” [*ֆրանսերէն*, (դաշնակի փոխադրութիւն) թենորի (ձայնը գործածուած է նուագարանի նման), երգչախումբի եւ լարային նուագախումբի համար]: Ուրեմն, Ղազարոսեան այս գործը փոխադրութիւն մը կը նկատէ:

## ՆԱՅԵԱՑ ՍԻՐՈՎ
## CANTIQUE

Հիմնանիւթը ընդունած է *Ժամագիրք*ի Խաղաղականի Երեկոյեան Ժամու «Նայեաց սիրով»-էն («Սիրոյ քո հուր»), որուն կցած է ժողովրդական պարեղանակ մը:

Երգեհոնի անթուակիր ինքնագիրը կը գտնուի 19 թերթէ բաղկացած թղթածրարի մը մէջ, որ կը բովանդակէ ստեղծագործութեան վեց այլ տարբերակներ եւս զանազան նուագարանային եւ երգչային կազմերու համար՝ մեներգ եւ դաշնակ (Պոլիս, 1955), մեներգ, սրինգ եւ լարայիններ (անթուակիր), սրինգ եւ դաշնակ (Պոլիս, 1953)[13], մեներգ, սրինգ եւ դաշնակ (անթուակիր), մենանուագ դաշնակ (անթուակիր)[14] եւ թաւջութակ եւ դաշնակ (անթուա-

կիր)[15]: Այս Թղթածրարի մեներգ-դաշնակի տարբերակին տիտղոսաթերթն ունի հետեւեալ գրութիւնը՝ «*Նայեաց սիրով*, Շարական՝ Ներսէս Շնորհալիի (կոմիտասեան եղանակիւ)»:

Գոյութիւն ունի նաեւ առանձին ձեռագիր մը՝ որ կը բովանդակէ ստեղծագործութեան զուգերգի (սոփրանօ-թենոր) եւ դաշնակի տարբերակ մը (Դեկտեմբեր 1955, Պոլիս):

Երգեհոնի տարբերակը խորագրուած է *Cantique* եւ նշուած է կատարուելու հարմոնիումի կամ երգեհոնի համար: Հայերէն խորագիրը աւելցուած է իմ կողմէս, հետեւելով այլ ձեռագիրներու վրայ դրոշմուած հայկական խորագիրին:

## ԱՅԼ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Տիկ. Սօնա Պետրոսեանի մօտ պահուող նուագահանդէսներու յայտագիրներ ցոյց կու տան՝ որ 1948 Մայիս 23-ին, Նիւ Եորքի Cavalry Baptist Church-ին մէջ, կը նուագուի Ղազարոսեանի յատուկ այդ առաւօտեան պաշտամունքին համար յօրինած Organ Prelude in C major (Երգեհոնի Նախաբան տօ մեծալարի մէջ), որ կը կրկնուի 1949 Յունուար 30-ին: 1949 Նոյեմբեր 20-ին, American Pro-Cathedral Church of the Holy Trinity-ի առաւօտեան պաշտամունքին կը կատարուի Prelude (Նախաբան) եւ Chorale (Շարական) երգեհոնի համար: Անոնց ձեռագիրները չկարողացայ գտնել:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.-*Տե՛ս Հասկ*, ամսաթերթ, Անթիլիաս, Սեպտեմբեր-Հոկտեմբեր 1946, ԺԵ. տարի, թիւ 9-10, էջ 287-289. Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, Գահիրէ, 2005. Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ երգեհոնի համար*, Գահիրէ, 2005:

2.-*Տե՛ս* Եղիա Մ. Տնտեսեան, *Շարական ձայնագրեալ*, Ա. մաս, Իսթանպօլ, 1934:

3.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, «Շարականք դաշնաւորեալք», *Հասկ*, հայագիտական տարեգիրք, Ա. տարի, 1948, Անթիլիաս, էջ 161-176:

4.-Արշակ Ալպօյաճեան, «Հասկ հայագիտական տարեգիրք», *Հայաստանի կոչնակ*, շաբաթաթերթ, Նիւ Եորք, 6 Նոյեմբեր 1948, թիւ 45, էջ 1066:

5.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

6.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Հայկական ծիսերգութիւն դաշնակի, ջութակի եւ թաւջութակի համար*, Գահիրէ, 2005:

7.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

8.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ ջութակի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

9.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ թաւջութակի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

10.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ ջութակի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005):

11.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ սրինգի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

12.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Պատարագ, նախաբան, օպուսյի, 2 ջութակի, ջութի եւ թաւջութակի համար*, Գահիրէ, 2005:

13.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ սրինգի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

14.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

15.-*Տե՛ս* Գոհարիկ Ղազարոսեան, *Ստեղծագործութիւններ թաւջութակի եւ դաշնակի համար*, Գահիրէ, 2005:

# 3.Ցնծութեամբ տօնեսցուք զծնունդ քո
# 3.-Réjouissons-nous de ta naissance












## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ
## INDEX

**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ**
**ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ**
«Սաթենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»

ՏԻԳՐԱՆ ՋՈՒՀԱՃԵԱՆ

1.-*Սուրբ, սուրբ եւ Հայր մեր*, 1999
2.-*Արշակ Բ.*, օփերա, 2000
ա.-Երգի եւ դաշնակի համար
բ.-Նուագագրութիւն
գ.-Նուագախումբի նուագարանները առանձին (24 հատոր)
3.-*Աւէ Մարիա*, 2000
4.-*Կատոթ*, ջութակի, թաւջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար, *Զորս Փիւկ*, լարային եռանուագի եւ քառանուագի համար, 2000
5.-*Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, 2005
6.-*Մեներգներ եւ խմբերգներ դաշնակի նուագակցութեամբ*, 2005
7.-*Ստեղծագործութիւններ նուագախումբի համար*, 2005
8.-*Ստեղծագործութիւններ փողային նուագախումբի համար*, 2005
9.-*Յաւերժ շարժում*, դաշնակի եւ նուագախումբի համար, 2005

ՔՐԻՍՏԱՓՈՐ ԿԱՐԱ-ՄՈՒՐԶԱ

*Դաշնակի ստեղծագործութիւններ*, 2000

ՄԱԿԱՐ ԵԿՄԱԼԵԱՆ

*Դաշնակի ստեղծագործութիւններ*, 2000

ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆ

*Գուշակուհին*, քառաձեռն դաշնակի համար, 2000

ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼ

*Էջեր ալպոմէն եւ Հայկական պար*, դաշնակի համար, 2000

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆ

*Album of Selected Recordings of Aram Khachaturian's Works*, 2004

ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ

1.-*Ստեղծագործութիւններ դաշնակի համար*, 2005
2.-*Ստեղծագործութիւններ ջութակի եւ դաշնակի համար*, 2005
3.-*Ստեղծագործութիւններ թաւջութակի եւ դաշնակի համար*, 2005
4.-*Ստեղծագործութիւններ սրինգի եւ դաշնակի համար*, 2005
5.-*Ստեղծագործութիւններ երգեհոնի համար*, 2005
6.-*Ստեղծագործութիւններ լարային քառանուագի համար*, 2005
7.-*Հայկական ծիսերգութիւն*, դաշնակի, ջութակի եւ թաւջութակի համար, 2005
8.-*Ռոմանս, Կարօտի երգ*, դաշնակի, սրինգի եւ ջութի համար, 2005
9.-*Ութ փոփոխակ Կոմիտաս Վարդապետի ժողովրդական եղանակի վրայ*, սրինգի, 2 ջութակի, ջութի եւ թաւջութակի համար, 2005
10.-*Պատարագ, Նախաբան*, օպուայի, 2 ջութակի, ջութի եւ թաւջութակի համար, 2005


Հասցէ՝
Armenian General Benevolent Union
15, Emad El-Din Street
Cairo - 11111
Egypt